# ՀՐԱՀԱՆԳ

## ՎԱՐՊԵՏԻ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ԱՍՏԻՃԱՆԻՆ

ԸՍՏ ԱՐԴԻ ԾԻՍԻ

Գ





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

—1868—

Hrahang Varpeti khorhrdawur.

# ՀՐԱՀԱՆԳ

## ՎԱՐՊԵՏԻ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ԱՍՏԻՃԱՆԻՆ

## ԸՍՏ ԱՐԴԻ ԾԻՍԻ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

—1868—

## ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆՑ

# ԵՐՐՈՐԴ ԱՍՏԻՃԱՆԻ

Գ.եր.·. կափիչի հարուած մը կը զարնէ եւ կըսէ .

Հարց. « Մեծարգոյ Եղբ.·. Ա. Գ.·., ի՞նչ է Գ.·.ի մը առաջին պարտքը Վարպ.·.ի Օթ.·.կին մէջ » :

Պատասխան. « Գ.եր.·., ստուգել թէ Տաճարը փակուա՞ծ է » :

Գ.եր.·. « Հաճեցէք ստուգել Եղբ.·.իմ » :

Հրամանը կատարուելէն վերջը՝ Գ.եր.·. կըսէ .

« Մեծ.·.գոյ Եղբ.·. Բ. Գ.·., ո՞րն է Գ.·.ի մը երկրորդ պարտաւորութիւնը :

Գ. Ստուգել թէ ամեններկայ գըտնուող Եղբ.·.ք Վարպետ են :

Գ.·. « Մեծ.·.գոյ Եղբ.·.ք Ա. եւ Բ. Գ.·.ք, հաճեցէք ստուգել » :

Եղբ.·. Գ.·.ք այս հրամանը կը կատարեն խուրաքանչիւրն իր սիւնը պար.

տեղով. եւ երբոր իրենց տեղը դառ-նան, կարգաւ կըսեն.

« Պ․Եր∴ Վարպետ, իմ սեանս առջեւ շարուած ամեն Եղբ∴ք Վարպետ են»:

Հ. Եղբ∴ Ա․ Պ∴, ի՞նչպէս կըրնամ վստահ ըլլալ թէ դուք Վարպ∴էք:

Պ. Պ․Եր∴, կրնաք զիս փորձել, Ակասիան ծանօթ է ինձ:

Հ. Մեծ∴ դոյ Եղբ∴ Բ․Պ∴, քանի՞ տարեկան էք:

Պ. Եօթն եւ աւելի, Պ․Եր∴:

Հ. Որմնադիրք ո՞ր ժամուն Վարպետի աշխատութիւնները կըսկսին:

Պ. Կէս օրին, Պ․Եր∴:

Հ. Ժամը քանի՞ն է, Մեծ∴ դոյ Վարպ∴ Պ∴:

Պ. Կէս օր է, Վ․Եր∴:

Պ․Եր∴ կըսէ. « Որովհետեւ կէս օր է, եւ այս ժամուս մեր աշխատութիւնները կըսկսին, Եղբ∴ք Ա․ եւ Բ․ Պ∴ք, ձեր սիւներուն առջեւ շարուած Եղբ∴ները հրաւիրեցէք որ ձե-

զի եւ ինձի հետ միանալով Վարպետներու սենեակին աշխատութիւնները սկսինք »:

Եղբ.·. Գ.·.ք հրաւէրը կը կրկնեն ։

Գեր.·. կոփիչով երեք հարուած կուտայ զոր Գ.·.ք կը կրկնեն . յետոյ կըսէ ։

« Ի Փ.·. Մ.·. Ճարտ.·. ին Տէեղ.·.ց, յԱ.·.ն եւ ընդ Հով.·. Մ.·.ի Արեւ.·. լից Գաղղիոյ, Օթ.·. կիս Վարպետի աշխատութիւնները կը բանամ նոյն աստիճանին նշաններովը եւ բախմամբ »:

« Առ իս, Եղբ.·.ք իմ, նշանաւ եւ բախմամբ ( զոր կը կատարեն ) »:

Գեր.·. կոփիչով հարուած մը կուտայ եւ կըսէ .

« Միջավայրին սենեկին աշխատութիւններն սկսան . տեղերնիդ նստէք, Մեծ.·. Եղբ.·.ք »:



## ՊԱՏՄԱԿԱՆ ՃԱՌ

# ՎԱՐՊԵՏԻ ԱՍՏԻՃԱՆԻՆ

Պ․եր․՝․ Նուիրելոյն ուղղելով խօսքը ։

«Մ՛եզ հօս գումարող այս դամբանական հանդէսը յիշատակ է այն եղերական անցքին՝ որ իր մէջ պարունակած խորհրդաւոր դաղափարներուն պատճառաւ մեր ուխտէն ընդունուած աւանդութեան մը համեմատ ժամանակաւ ուխտիս հետեւողներուն մէջ պատահած է ։

«Որմ․՝․ կան աւանդութեան համեմատ, Հիրամ՝ Տիւրոսի թագաւորը՝ Հիրամ—Աբի անուն հռչակաւոր ճարտարապետը Սողոմոն թագաւորին ղրկեց որպէս զի Երուսաղէմայ Տաճարին շինութեան վերատեսչութիւն ընէ ։

«Հիրամ—Աբի բազմաթիւ գործաւորներ ունենալով իր հրամանին ներքեւ, զանոնք երեք կարգի բաժնեց․ Աշակերտ, Սատար եւ Վարպետ ։

«Իւրաքանչիւր կարգ իր սեփհական

խորհուրդներն ունէր, եւ ամեն մէկ կարգի անդամակիցք իրար ճանաչելու համար յատուկ խօսքեր նշաններ եւ շօշափումներ սահմաներ էին մէջերնին։

«Աշակերտք իրենց Թօշակը Ժ∴ Աիւնին առջեւ կընդունէին, Ասատարք Պ∴ Աիւնին առջեւ, իսկ Վարպետք միջավայրի սենեկին մէջ. բայց վճարողները մէկու մը Թօշակ չէին տար՝ մինչեւ որ ամենայն զգուշաւորութեամբ զիւրաքանչիւրն իր աստիճանին մէջ «չի փորձէին»։

«Երեք չար ընկերներ, տեսնելով որ Տաճարին շինութիւնն աւարտելու վրայ էր, եւ իրենք դեռ Վարպետութեան Աստիճանին չէին հասեր, խորհուրդ ըրին որ նենգութեամբ Յարգոյ Պերամ Վարպ∴ին վրայ իյնան, եւ ըսպառնալեօք կամ բռնութեամբ Վարպետի խօսքերը նշաններն ու շօշափումն անկէ կորզեն։

«Այս երեք վատշուէրները գիտէին որ Պիրամ ամեն իրիկուն գործաւոր-

ներն արձկելէն ետեւ կերթար չինու-
թիւններն աչքէ կանցունէր . ուստի ո-
րոշեցին որ նոյն միջոցին իւրաքանչիւրը
Տաճարին երեք դրանց մէկուն քով դա-
րանի մտնեն ։

Վարպետն իր այցելութիւնը կա-
տարելէ ետեւ երբոր Հարաւային դրա-
նէն դուրս կելնէր , երեք ընկերներէն
մէկը դիմացն ելաւ ձեռքը կանոնով մը ,
եւ զինքը կեցընելով Վարպետի խօսքն
ու նշանն ուզեց ։ « Թշուառական՛ն , ը-
սաւ անոր Քիրամ , դուն աղէկ գիտես
որ իմ պարտականութիւնս թող չտար
ինձ որ զանոնք քեզ տամ , եւ ես ալ
պարտքս կատարելու համար կենացս
վտանգն անգամ բանի տեղ չեմ դներ .
ուստի այդ կերպով Վարպետի խօսքն
ու նշանը չեմ կրնար տալ քեզ . ջանք
ըրէ որ արժանի ըլլաս , եւ այն ժամա-
նակ կընդունիս . . . » .

« Իսկոյն դաւաճանն իր ձեռքի կա-
նոնով ուժգին հարուած մ'ուզեց իջե-
ցընել Քիրամի գլխուն , բայց Հար-

ուսածն աղէկ ուղղուած չըլլալուն՝ անոր ուսին եկաւ ։

« Բերամ փախչելով ազատիլ ուզեց, եւ դէպ Երեւմտեան դուռը գընաց. հոն երկրորդ Սատարը դիմացն ելաւ, որ ձեռքը լծակով մը զինեալ՝ առաջինին ըրած խնդիրը կրկնեց ։ Բերամ ասոր ալ նոյն պատասխանը տալով, Սատարը ձեռքի լծակն անոր գըլխուն իջեցնել ուզեց, բայց Բերամ փախչելով հարուածը ծոծրակին եկաւ ։

« Բերամ իր մնացած ուժն ամփոփելով Երեւելեան դռնէն փախչիլ ուզեց. բայց հոն ալ երրորդ Սատարը դէմն ելնելով նոյն խնդիրն ըրաւ ։ Առջեան ասոր ալ մերժողական պատասխան տուաւ ։ Այն ատեն դատաւորը ձեռքի կոփիչովն այնպիսի բռուն հարուած մ՚իջեցուց Բերամի ճակտին, որ զայն մեռած իր ոտքին ներքեւ տապալեց ։

« Չորեք դատաւորներն իրենց գործած ոճրին մեծութիւնն ու անպիտանութիւնը շուտով հասկցան, Ուստի ու-

ռաջին մտածութիւննին եղաւ իրենց եղեռնագործութեան հետքը ջնջել՝ Հիրամի մարմինը քաղաքէն դուրս տանելով. եւ դաշտին մէջ թաղեցին։

« Այս սոսկալի դէպքը շատ չի քշեց Յ∴Վարպետ Հիրամի վերատեսչութեան ներքեւ աշխատող բազմաթիւ գործաւորներն իմացան։

« Վարպետներն անմիջապէս ժողովի գումարուելով՝ իրենց Գործ∴նը սեւով պատեցին 'ի նշան սգոյ, եւ բաւական ժամանակ Հիրամի վրայ լալէ ետեւ, որոշեցին որ ամեն ջանք 'ի գործ դնեն՝ ոչ միայն իրենց տարաբաղդ գըլխաւորին մարմինը գտնելու եւ անոր պատշաճ թաղում մը տալու համար, այլ եւ այն խորհրդաւոր գոհարը գըտնելու, զոր Հիրամ միշտ իր վրայ կը կրէր եւ որուն վրայ անեղծանելի տառերով Տ∴ց Մ∴ծ Ճ∴ պետին անուան սկզբնատառն եւ Վարպետներուն խորհրդաւոր անուանակոչութիւնը դրոշմուած էր։

# ՀՐԱՀԱՆԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Պ․եր ∴ իր հարցմանց պատասխանն որմէ կ՚ուզէ՝ անկէց կրնայ պահանջել։ Եթէ պատասխանողը Եղբ ∴ Պ ∴ րէն զատ ուրիշ Վ․ար ∴ պետ մ՚ըլլայ, պէտք է որ երկու սիւներուն մէջ տեղը կանգնի՝ քիչ մ՚առաջ։

Հ. Մ․եծ ∴ Եղբ ∴, դուք Վ․արպե՞տ էք։

Պ. Պ․եր ∴, կրնաք զիս փորձել. ակասիան ծանօթ է ինձ։

Հ. Ո՞ւր ընդունուեցաք։

Պ. Հիքալին մէջ, այսինքն սրբավայրին մէջ։

Հ. Ներս մտած ատեննիդ ի՞նչ տեսաք։

Պ. Մուգ եւ սոսկումն։

Հ. Պատճառն ի՞նչ էր։

Պ. Տխուր դէպքի մը յիշատակը։

Հ. Ի՞նչ դէպք։

Պ. Հիրամ Վ․արպետին սպանութիւնը։

Հ. Ո՞վ սպաններ է զինքը ։

Պ. Երեք երդմնազանց Սատարներ ։

Հ. Այդ սպաննութիւնն իրօք եղա՞ծ է ։

Պ. Մե՛ր ուխտն իբրեւ առակ ընդունած է ։

Հ. Այդ առակին ներքեւ ի՞նչ խրատ ծածկուած է ։

Պ. Խիրամ Ճշմարտութիւնը կը ներկայացնէ. երեք երդմնազանց Սատարներն ալ «Տգիտութիւնը, Կեղծաւորութիւնը եւ Փառասիրութիւնը կը ներկայացընեն ։

Հ. Տաճարին մէջ մտնելնէդ ետեւ ուրիշ ի՞նչ տեսար ։

Պ. Խիրամի գերեզմանը՝ զոր աղօտ լոյս մը կը լուսաւորէր ։

Հ. Այդ գերեզմանն ի՞նչ մեծութիւն ունէր ։

Պ. Երեք ոտք լայնութիւն, հինգ խորութիւն, եօթն երկայնութիւն ։

Հ. Վրան ի՞նչ կար ։

Պ. Ակասիայի ճիւղ մը ։

Հ. Գերեզմանին մօտ կանգ առած

ժամանակնիդ ի՞նչ պատուիրեցին ձեզ ։

Պ. Ծունկը վերցընել ։

Հ. Աչքը ի՛նչ ըրին ։

Պ. Վարպետները մէջերնին որոշեցին որ Հիրամի մարմինը տեսած ատեննին ի՛նչ նշան որ ընեն եւ ի՛նչ խօսք որ իրենց բերնէն առաջին անգամ ելնէ, այնուհետեւ Վարպետի նշանն ու խօսքն անոնք ըլլան ։

Հ. Ուրիշ ի՞նչ ըրին ։

Պ. Մարմինը ծածկող քողը վերցուցին եւ տակաւին նշան մը ըրին ։

Հ. Դուք ալ ըրէք նայիմ, Եղբ∴ մ իմ ։

(Պատասխանողը խնդրուած նշանը կուտայ)

Հ. Հիրամին մարմինը գտնուած ատեն ի՞նչ տեսնուեցաւ ։

Պ. Տեսնուեցաւ որ մարմինը ոսկորներէն կը զատուէր, եւ այս բանը Գ∴եբ∴յն Մ∴ Պ∴ Ն∴ բառերով բացատրեց ։

Հ. Յետոյ ի՞նչ տեսնուեցաւ ։

Պ. Ամենազուտ ոսկիէ եռանկիւն մը, որուն կեդրոնը G գիրը փորագրուած

էր, որ սկզբնաւորուն է Տ∴ց Մ∴ Ճար∴ին անուանը, եւ եռանկիւնին տախտակներուն վրայ ալ « Հակկ—սէյն —ակկ » բառերը։

Հ. Ի՞նչ կը նշանակեն։

Պ. « Ես եմ որդի ճշմարտութեան »։

Հ. Ակասիայի ճիւղն ի՞նչ ըրիք։

Պ. Երդումս տալէս վերջը, ճիւղը Մեծ∴յ Եղբ∴ Արար∴տին տուի, որ Պեր∴ին հրամանաւ Դաբիրը տարաւ։

Հ. Ոսկի եռանկիւնն ի՞նչ ըրին։

Պ. Արեւ∴լքը ղարդարող շրջանակի մը մէջ դրին։

Հ. Վարպետ ընդունուած ժամանակնիդ քանի՞ տարեկան էիք։

Պ. Եօթն եւ աւելի։

Հ. Ինչո՞ւ եօթն եւ աւելի։

Պ. Նախ եօթն տարի, վասն զի Օթեակն ուղիղ եւ կատարեալ սեպուելու համար հարկ եղած սպասներուն թիւը եօթն է. իսկ աւելի բառը կաւելցընեմ նշանակելու համար թէ ոչ միայն խորհրդաւոր Սրմ∴թեան ամեն խորհուրդ-

ները գիտեմ, այլ եւ անոնց մէջ պարունակուած խրատները ։

Հ. Վ՝արպետներն ի՞նչպէս ճանբորդութիւն կընեն ։

Պ. Արեւ∴քէն Ար∴մուտք, եւ Հարաւէն Հիւսիս, այսինքն բոլոր աշխարհի երեսը ։

Հ. Ինչո՞ւ համար ։

Պ. Արեւուն պէս ամեն տեղ լոյսը տարածելու համար ։

Հ. Ի՞նչ բանի վրայ Վ՝արպետները կաշխատին ։

Պ. Գծելու տախտակին վրայ ։

Հ. Իրենց Թոշակն ո՞ւր կընդունին ։

Պ. Միջավայրի սենեկին մէջ ։

Հ. Երեք սեղանները լուսաւորող ինն աստղերն ի՞նչ կը նշանակեն ։

Պ. Հիրամի մարմինը փնտռելու գացող ինն Վ՝արպետները կը ներկայացնեն ։

Հ. Որմնադրաց ամենէն ընտանի եւ ամենէն սիրելի գործիքներն որո՞նք են ։

Պ. Անկիւնաչափն ու Կարկինը ։

Հ. Ինչո՞ւ համար ։

Պ. Վ՝ասն զի բարի Որմնադիր մը չէ կրնար խոտորիլ արդարութենէ ու ճըշմարտութենէ, որոց այդ գործիքները խորհրդանիշն են։

Հ. Եթէ մեծ տագնապի մը մէջ գտնուիք եւ կեանքերնիդ վտանգի մէջ ըլլայ, ի՞նչ կընէք։

Պ. Ընձկութեան նշանը կընեմ։

Հ. Ի՞նչ կերպով կըլլայ այդ նշանը։

(Նշանը կընէ աղաղակելով. «Ա՜ իօ, եւայլն»)



## ՓԱԿՈՒՄՆ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆՑ

Հ∴ Մեծ∴ գոյ Եղբ∴ Ա∴ Պ∴ միջավայրի սենեկին աշխատութիւնները ժամը քանիի՞ն կը գոցուին ։

Պ∴ Կէս գիշերուն ։

Հ∴ Ժամը քանի՞ն է, Եղբ∴ Բ∴ Պ∴ ։

Պ∴ Կէս գիշեր է, Պ∴եր∴ ։

Պ∴եր∴ կըսէ.

« Որովհետեւ կէս գիշեր է, եւ մեր աշխատութիւններուն այս ժամուս կաւարտին, Եղբ∴ք Ա∴ եւ Բ∴ Պ∴ք, հրաւիրեցէք մեր Մեծ∴ յ Վ∴արպ∴ները որ ձեզի եւ ինծի հետ միանալով աշխատութիւնները գոցելու օգնեն » ։

Պ∴ք ծանուցումը կը կրկնեն ։

Պ∴եր∴ կըսէ. « Ոտք ելէք եւ 'ի կարգ, Եղբ∴ք իմ ։

« Ի Փ∴ Մ∴ծի Ճ∴տին Տիեզ∴ց, յանուն Մեծ Վարպետին Ուխտ.իս եւ ընդ Հով∴աւ Մ∴ծի Արեւ∴լեց Գաղղիոյ, Յ∴ . . . Օթ∴

կես աշխատութիւնները ը կը գոցեմ սօվօրական նշաններով եւ բախմամբ »։

Ինն անգամ կոփիչով կը զարնէ եւ կըսէ .

« Ըսա իս , Եղբ∴ք իմ , նշանաւ եւ բախմամբ »։

Յետոյ կոփիչի հարուած մը կուտայ եւ կըսէ .

« Աշխատութիւնք գոցուեցան . Երթանք խաղաղութեամբ »։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

## ՍԿՈՎՏԵԱՆ ԾԷՍ

### ԱՇԱԿԵՐՏԻ ԱՍՏԻՃԱՆԻՆ

*Արարողութիւնն ու հրահանգը գաղղիական ծիսին պէս են՝ բաց 'ի հետեւեալ տարբերութիւններէն ։*

*Ա. Դ.∴ Եղբ.∴ը Հիւսիսային սիւնակին առջեւ, եւ Բ. Դ.∴ Եղբ.∴ը Հարաւայինին առջեւ կը նստին ։*

*Բաղխումը երեք միօրինակ հարուած է ։*

*Ձայնարկութիւնը Հուզէ է ։*

*Նուիրական բառն է Գ.∴ փոխանակ Ծ.∴ի ։*

*Քայլը ձախ ոտքէն կ'սկսի ։*

---

## ՍԿՈՎՏԵԱՆ ԾԷՍ

### ՍԱՏԱՐԻ ԱՍՏԻՃԱՆԻՆ

*Արարողութիւնն ու հրահանգը գաղղիական ծիսին պէս են՝ բաց 'ի հետեւեալ տարբերութիւններէն ։*

*Ա. Դ.∴ Եղբ.∴ը Հիւսիսային սիւնակին*

առջեւ, եւ Բ. Դ. . . Եղբ . . ը Հարաւայինին առջեւ կը նստին ։

Բաղխումը հինգ հաւասար հարուած է ։

Ձայնարկութիւնը Հուզէ է՝ փոխանակ « Վիվա » ի ։

Նուիրական բառն է Ժ . . փոխանակ Գ . . ի ։

---

## ՍԿՈՎՏԵԱՆ ԾԷՍ

### ՎԱՐԴԵՏԻ ԱՍՏԻՃԱՆԻՆ

Ա. Դ. . . ը Հիւսիսային սիւնին առջեւ կը կենայ . Բ. Դ. . . ը Հարաւայինին առջեւ ։

Բաղխումն ու ձայնարկութիւնն առաջին երկու Աստիճաններուն պէս կը տարբերին ։

Նուիրական խօսքն է Մ . . . . Անցախօսքն է Թ . . . . ։

Նիստն ու կրթութիւնը Գաղղիական ծէսին պէս ։